Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(Բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 12 ՀՈՒՆԻՍ 1952

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ




**Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿ(բ)Պ Կենտկոմ, Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին, Հեռախոս՝ 2—52—78**


---

# ԲԵՐՔԱՀԱՎԱՔԸ ԵՎ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԱՆԵԼԻՔՆԵՐԸ

*Ռեսպուբլիկայում չթուլացող թափով շարունակվում են բերքահավաքի նախապատրաստական աշխատանքները։ Մի շարք շրջանների ցածրադիր վայրերում արդեն սկսվել է հացահատիկային կուլտուրաների հունձը։ Շուտով կսկսվի մասսայական բերքահավաքի եռուզեռը։*

*Սոցիալիստական գյուղատնտեսության աշխատողները եռանդուն կերպով նախապատրաստվում են գործի վերածելու պարտիայի ու կառավարության որոշումները, ընկեր Ստալինի այն ցուցումը, թե* «բերքահավաքը սեզոնային գործ է և նա սպասել չի սիրում: Բերքը ժամանակին հավաքեցիր՝ կշահես, ուշացրիր բերքահավաքը՝ տանուլ կտաս»:

*Բերքահավաքի օրերին սոցիալիստական գյուղատնտեսության աշխատողների քաղաքական ակտիվությունը, աշխատանքային խանդավառությունը գլխավորելու գործում, պարտիական կազմակերպությունների ղե-*

կավարությամբ, խոշոր անելիքներ ունեն ագիտատորները։

Բերքահավաքի շրջանում քաղաքական ագիտացիայի առաջնահերթ խնդիրն է՝ մոբիլիզացնել կոլտնտեսային գյուղացիության, ՄՏ կայանների մեխանիզատորների, սովխոզների աշխատողների ուժերը, բերքահավաքը բարձր կազմակերպվածությամբ, սեղմ ժամկետում, անկորուստ անցկացնելու համար։

Ագիտատորների խնդիրն է՝ միաժամանակ, բերքահավաքի շրջանում ամբողջ օրը դաշտում անցկացնող աշխատողներին կապել մեր մեծ Միության ընդհանուր կյանքի հետ, հաղորդակից դարձնել նրանց Սովետական Միության մեջ կատարվող աշխատանքային իրադարձությունների, միջազգային հարաբերությունների փաստերի հետ։

Դաշտում մասսայական-բացատրական աշխատանքը պետք է կազմակերպել այնպես, որ յուրաքանչյուր աշխատող խորը կերպով ըմբռնի բերքահավաքի և մթերումների քաղաքական-տնտեսական խոշոր նշանակությունը՝ մեր երկրի հզորության հետագա ամրապնդման, սովետական մարդկանց կյանքի պայմանների էլ ավելի բարելավման համար։



Այդ նպատակով անհրաժեշտ է բերքահավաքի օրերին քաղաքական աշխատանքը ամբողջովին տեղափոխել դաշտ, այնտեղ՝ բրիգադներում, օղակներում հաճախակի կազմակերպել հետաքրքիր ու բովանդակալից զրույցներ, կոլեկտիվ ընթերցանություններ, ցուցադրական ագիտացիա։ Անհրաժեշտ է կազմակերպել գյուղատնտեսության առաջավորների ելույթները ունկնդիրների առջև, պարբերաբար լույս ընծայել խլիշովկաներ, «Կայծակ» թերթիկներ։

Այն բանի համար, որ ագիտացիան լինի նպատակասլաց, կոնկրետ, և ունենա գործնական հետևանքներ, անհրաժեշտ է, որ ագիտատորները լրջորեն նախապատրաստվեն պարապմունքներին։ Ծանոթանան, թե իրենց ունկնդիրները ինչպես են կատարում օրվա առաջադրանքները, ստանձնած պարտավորությունները, խորը կերպով թափանցեն տնտեսության ներքին կյանքի մեջ, վեր հանեն և արմատավորեն առաջավորների օրինակելի նախաձեռնությունները, համարձակորեն քննադատեն ետ մնացողներին։

Ագիտացիոն պարապմունքները հաջող նախապատրաստելու և դրա շնորհիվ հետաքրքիր ու բովանդակալից զրույցներ անցկացնելու ուսանելի փորձ ունի Կոտայքի ՄՏ

կայանի ագիտատոր ընկ. Պետրոս Միկիտոսյանը: Որպես կանոն նա պարապմունքից առաջ կարդում է նախատեսված թեմային վերաբերող գրքեր, հոդվածներ, որոշումներ, իր մոտ կատարելով անհրաժեշտ նշումներ: Բացի այդ, պարապմունքի օրը նա իր ծոցատետրում գրանցում է մեխանիզատորների աշխատանքի որակական և քանակական ամենավերջին ցուցանիշները և նոր միայն ներկայանում պարապմունքի:

Սովորաբար զրույցի սկզբում կանգ առնելով ընդհանուր բնույթ կրող մեկ, կամ անհրաժեշտության դեպքում ավելի հարցերի վրա, ագիտատոր Միկիտոսյանը դրանք կապում է մեքենա-տրակտորային կայանի կոլեկտիվի առջև դրված խնդիրների հետ, խոսում այն մասին, թե ունկնդիրներից ով ինչպես է աշխատում այդ խնդիրների կենսագործման համար:

Բերքահավաքի շրջանում պարտիական կազմակերպությունների ղեկավարությամբ ագիտատորները պետք է կազմակերպեն դաշտում աշխատողների սոցիալիստական մրցությունը, գլխավորեն աշխատավորների աշխատանքային խանդավառությունը: Հըմտորեն գլխավորել սոցիալիստական մրցու-



թյունը, նշանակում է աշխատավորների շըրջանում ուժեղացնել բոլշևիկյան ներգործոն և նպատակասլաց ագիտացիան, խրախուսել առաջավորներին, մասսայականացնել ու արմատավորել նրանց դրական փորձը, օգնել հետ մնացողներին՝ առաջավորներին հասնելու համար, ստեղծել բերքահավաքի աշխատանքների մասսայական վերելք:

Ագիտատորների խնդիրն է բերքահավաքի շրջանում դաշտում աշխատողներին լիովին ընդգրկել մրցության մեջ, դաստիարակել նրանց մոտ աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունք, հասնել այն բանին, որ յուրաքանչյուրը պարզորոշ գիտակցի իր դերը կոմունիստական շինարարության գործում, տոգորվի ամբողջ աշխարհում խաղաղության պաշտպանության անխորտակելի ամրոց՝ Սովետական Միության հզորությունն է՛լ ավելի ամրապնդման նվիրական գաղափարներով:

Մեր շատ ագիտատորներ հանդես են գալիս սոցիալիստական մրցության նախաձեռնողների դերում: Այսպես, օրինակ, Էջմիածնի № 1 ՄՏ կայանի մեխանիզատորների շրջանում սոցիալիստական մրցությունը ա-

ռաջինը նախաձեռնեց ագիտատոր Էմմա Խաչատրյանը։

Պարապմունքի ժամին ընթերցելով Հոկտեմբերյանի բամբակագործների կոչը, ագիտատորը ունկնդիրներին խնդրեց արտահայտվել այն մասին, թե ինչպես լավագույն կերպով արձագանքել այդ կոչին։ Մեխանիզատորները իրենց ելույթներում նոր պարտավորություններ վերցրին։ Իր մոտ նախօրոք կատարած հաշվումների, մեխանիզատորների նոր վերցրած պարտավորությունների հիման վրա, ագիտատորը դաշտում կազմակերպեց սոցիալիստական մրցության պայմանագրերի կնքման գործը։ Հաջորդ պարապմունքից սկսած է. Խաչատրյանը սկսեց լուսաբանել մրցության ընթացքը, խրախուսել առաջավորներին, օգնել ետ մնացողներին, ձգտելով մրցության միջոցով հասնել գործնական բարձր արդյունքների։

Վ. Ի. Լենինը նշել է, որ տնտեսական ընդհանուր վերելքի համար անհրաժեշտ է, որպեսզի արտադրության կազմակերպման նոր փորձը դառնա մասսաների սեփականությունը։ Այս տեսակետից էլ ագիտատորների խնդիրն է՝ ընդհանրացնել և արմատավորել Սոցիալիստական Աշխատանքի Հերոս-



ների, բարձր բերքի վարպետների փորձը։ Առաջինը տեսնել ու հայտնաբերել այն նորն ու առաջադիմականը, որ ծնվում է մասսաների ստեղծագործական նախաձեռնության մեջ, կարողանալ իմաստավորել այդ նորը, դարձնել այն բոլորի սեփականությունը։

Ագիտացիոն պարապմունքների ժամանակ գյուղատնտեսության առաջավորներին նվիրված խոսքը չպետք է լինի ընդհանուր, վերացական, այլ կոնկրետ։ Ագիտատորը պետք է պատմի ունկնդիրներին, թե աշխատանքի ինչ ձևերով ու մեթոդներով է առաջավորը կենսագործում սովետական առաջավոր ագրոբիոլոգիայի հիմունքները, ինչ է անում բարձր բերք ստանալու համար, ինչպես է նախապատրաստում և կազմակերպում բերքահավաքը։

Կոլտնտեսային դաշտերում աշխատող Սոցիալիստական Աշխատանքի Հերոսների և գյուղատնտեսության այլ առաջավորների փորձը մասսայականացնելու և արմատավորելու հիանալի օրինակներ են տալիս Նոր Բայազետի Կարմիր գյուղի «Սպարտակ» կոլտնտեսության ագիտատորները։

Ագիտատորներ Գ. Շահոյանը, Վ. Ենգոյանը և նրանց օրինակով մյուսները, նախ

իրենք են լավ ուսումնասիրում Սոցիալիստական Աշխատանքի Հերոսների կուտակած հարուստ փորձը և ապա նոր միայն սկսում մասսայականացնել ու արմատավորել այն։ Գյուղատնտեսական դաշտային աշխատանքների շրջանում ծավալված քաղաքական-մասսայական աշխատանքի շնորհիվ կոլտնտեսության բոլոր բրիգադներում սկսեցին աշխատել առաջավորների մեթոդներով։

Շարունակելով առաջավորների փորձի մասսայականացումը, կոլտնտեսության պարտիական կազմակերպության ագիտատորները հաճախակի ագիտացիոն պարապմունքները տեղափոխում են Սոցիալիստական Աշխատանքի Հերոսների դաշտերը, կազմակերպում նրանց ելույթները ունկնդիրների առջև, տեղում ցույց տալիս առաջավորների գործադրած աշխատանքի մեթոդները, ստացված արդյունքները։

Կազմակերպելով ագիտացիա աշխատանքի լավագույն օրինակների շուրջը, ցուցադրելով ու խրախուսելով ամեն մի նորն ու առաջադիմականը, ագիտատորների ուշադրությունից չպետք է վրիպի բերքահավաքի նախապատրաստման ու անցկացման գործում ամեն մի դանդաղաշարժություն, թափ-



թփվածություն, անկազմակերպվածություն։ Բոլշևիկյան ինքնաքննադատության ու քննադատության փորձված մեթոդով պետք է բացահայտել թերությունները, հասարակական պարսավանքի ենթարկել աշխատանքային կարգապահությունը խախտողներին։ Ագիտատորների առաջնահերթ խնդիրներից է բարձրացնել յուրաքանչյուրի պատասխանատվությունը հանրային բերքը հափշտակումներից, շռայլումներից պաշտպանելու գործում։

Կոլտնտեսությունների, սովխոզների, ՄՏ կայանների ագիտատորները բերքահավաքի օրերին պետք է մասսայական-բացատրական աշխատանք ծավալեն դաշտերում, կալերում, այնտեղ, որտեղ վճռվում է առատ բերքը անկորուստ հավաքելու հարցը։ Ագիտատորները պետք է հանդես գան առաջին պատվիրանի՝ առաջին կալից պետական պարտավորությունները կատարելու նախաձեռնողներ, առատ բերքով մեր սոցիալիստական Հայրենիքի հզորությունն է՛լ ավելի բարձրացնելու համաժողովրդական շարժման առաջամարտիկներ։

ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ԱՌԱՋԱՎՈՐՆԵՐԻ ՓՈՐՁԻՑ

## ԻՆՔՆԱՐԺԵՔԻ ԻՋԵՑՈՒՄԸ ՁԵՌՆԱՐԿՈՒԹՅԱՆ ԿՈԼԵԿՏԻՎԻ ԿԱՐԵՎՈՐԱԳՈՒՅՆ ԽՆԴԻՐՆ Է

*Լենինականի վագոնային դեպոն մեր ռեսպուբլիկայի առաջավոր ձեռնարկություններից է: Տարիներ շարունակ դեպոյի կոլեկտիվը քայլում է Միության լավագույն վագոնային դեպոների կոլեկտիվների շարքում:*

*Այս տարի օրավուր ավելի լայնորեն ծավալելով սոցիալիստական մրցությունը, վագոնայինները աննախնթաց հաջողությունների հասան՝ ժամկետից շատ գերակատարեցին 1952 թվականի առաջին կիսամյակի պլանները, անցյալ տարվա նույն ժամանակամիջոցի համեմատությամբ աշխատանքի արտադրողականությունը բարձրացրին 24,3 տոկոսով:*

*Լենինականի վագոնային դեպոյի կոլեկտիվը 1952 թվականի անցած ամիսների ընթացքում հումքը, նյութական մյուս միջոցները խստագույն խնայողությամբ գործածելու շնորհիվ, նորոգումների և թողարկած ար-*



*տադրանքի ինքնարժեքն իջեցրել է ավելի քան 13 տոկոսով: Տարեսկզբին սոցիալիստական մրցության մեջ մտնելով, վագոնայինները պարտավորվել էին կորուստները կանխելու միջոցով տնտեսել 300 հազար ռուբլու միջոցներ: Այդ պարտավորությունը 100 հազար ռուբլով արդեն գերակատարված է:*

*Դեպոյի կոլեկտիվը այս հաջողությունները ձեռք է բերել հետևյալ կերպ: Դեռ տարվա սկզբից այստեղ կազմակերպական-տեխնիկական մի շարք միջոցառումներ մշակվեցին, որոնց կենսագործումը մեծապես նպաստեց աշխատանքի արտադրողականության բարձրացման և հումքը խնայողությամբ ծախսելու գործին: Սոցիալիստական մրցության մեջ մտնելով Կիրովաբադի վագոնային դեպոյի կոլեկտիվի հետ, Լենինականի վագոնայինները բարձր պարտավորություններ ստանձնեցին՝ արտադրական յուրաքանչյուր օպերացիայի աշխատատարությունը նվազեցնելու, միջոցները տնտեսելու, յուրաքանչյուր օպերացիայի ժամանակ նորոգումների ինքնարժեքն իջեցնելու համար:*

*Դեպոյում լայնորեն արմատավորվեց անվանի նորարար Լիդիա Կորաբելնիկովայի նախաձեռնությունը: Նորոգողները, հյուսնե-*

րը և այլ պրոֆեսիայի բանվորները, հետևվելով անվանի նորարարի օրինակին, սոցիալիստական անհատական մրցությունն ծավալեցին յուրաքանչյուր ամսվա ընթացքում 1—2 օր տնտեսված նյութերի հաշվին աշխատելու համար։

Մրցության ընթացքում հայտնաբերվեցին ինքնարժեքի իջեցման նոր աղբյուրներ։ Այսպես, օրինակ, նորոգման կանգնած վագոնների փայտյա մասերը քանդելուց հետո առաջներում մի կողմ էին նետվում, որպես անօգտագործելի։ Վագոնայինների նախաձեռնությունը ցույց տվեց, որ եթե հին տախտակները վագոններից անջատվեն խնամքով, ապա նրանց զգալի մասը կարելի է վերամշակել և օգտագործել այլ նպատակի համար։ Այդպես վարվելով, հյուսներ Թ. Վարդպարոնյանը, Մ. Կիրակոսյանը և շատ ուրիշներ յուրաքանչյուր վագոն նորոգելիս սկսեցին տնտեսել 0,2—0,3 խորանարդ մետր տախտակ։ Դեպոյում այդ շարժումը գնալով ծավալվեց և տվեց իր հիանալի արդյունքը։ Յուրաքանչյուր ամիս այդ միջոցով տնտեսվեց մի քանի տասնյակ հազար ռուբլու անտառանյութ։

Ատաղձագործների, հյուսների օրինակին հետևեցին նաև ձուլողները, դարբինները,



փականագործները։ Ուսանելի է ձուլողների փորձը։ Դեպոյում առանցքակալներ ձուլելու համար օգտագործվում է թանկարժեք մետաղ։ Առաջներում այդ մասերը ձուլվում էին միայն նոր ստացված հումքից։ Որոնելով արտադրանքի ինքնարժեքն իջեցնելու նոր ուղիներ,ստախանովական ձուլող Պ. Ջեյրանյանը և ուրիշներ, հանդես եկան արժեքավոր առաջարկությամբ՝ առանցքակալների ձուլման համար օգտագործել նաև մաշված, շարքից դուրս եկած մետաղյա մասերը։ Առաջարկությունը խիստ արժեքավոր էր, հարկավոր էր միայն որոշել, թե ինչ հարաբերությամբ պետք է օգտագործել հին և նոր նյութերը։ Ինժեներների, տեխնոլոգների և ստախանովականների համագործակցությամբ այդ հարցը հաջողությամբ լուծվեց։ Մաշված մասերը օգտագործելու շնորհիվ մետաղագործները նույնպես սկսեցին տնտեսել հումքը։ Այդ մրցության հենց առաջին չորս ամիսների ընթացքում նրանք տնտեսեցին 20 տոննա սև, 3,5 տոննա գունավոր մետաղ, 5 տոննա թիթեղ։

Դեպոյում լուրջ աշխատանք կատարվեց նաև արտադրական յուրաքանչյուր օպերացիայի ժամանակ արտադրանքի ինքնարժեքը իջեցնելու համար։ Հետևելով Ստալինյան

մրցանակի լաուրեատներ Լեչենկոյի և Մուխանովի օրինակին, մրցության մեջ ընդգրկվեցին տասնյակ ստախանովականներ։ Այդ մրցությունը մեծ հաջողություն բերեց կոլեկտիվին։ Այսպես. սահմանված տեխնիկական նորմաների համաձայն, դեպոյում յուրաքանչյուր վագոնի հիմնական նորոգման համար պահանջվում է 120 ժամ։ Սակայն ստախանովական հյուսները, մյուսների հետ համագործակցած, արդյունավետ օգտագործելով աշխատանքային յուրաքանչյուր րոպեն, բարելավելով աշխատանքի կազմակերպումը, այդ ժամանակամիջոցը կրճատեցին մոտ 20 ժամով։ Դա մեծ չափով իջեցրեց նորոգումների ինքնարժեքը։

Արտադրանքի ինքնարժեքն իջեցնելու համար մղվող պայքարում աչքի ընկնող դեր են կատարում դեպոյի գյուտարարներն ու ռացիոնալիզատորները։ Այս տարվա անցած ամիսների ընթացքում արտադրության մեջ արմատավորվել են ռացիոնալիզատորական մի շարք առաջարկություններ, որոնք մեծ չափով նպաստել են արտադրության տեխնոլոգիայի կատարելագործման և աշխատանքի արտադրողականության բարձրացման գործին։ Այժմ դեպոյում լայնորեն օգտագործվում է վագոնների արգելակների



փորձարկման նոր հարմարանք, որի կիրառումը տարվա ընթացքում ձեռնարկությանը կտա մի քանի տասնյակ հազար ռուբլու միջոցների տնտեսում։

Լենինականի վագոնային դեպոյում արտադրական նորմաները կատարում ու գերակատարում են գրեթե բոլոր բանվորները։ Իսկ բազմաթիվ ստախանովականներ սիստեմատիկաբար կատարում են 2—3 արտադրական նորմա։ Ստախանովական Պ. Զեյթունյանը հաճախ օրվա առաջադրանքը կատարում է մինչև 420 տոկոսով։ Միշտ արտադրական երկու նորմա են կատարում անվանի կաթսայագործներ Գ. Զաքարյանը, Ց. Ալեքսանյանը, Ա. Գևորգյանը և ուրիշներ։ Արտադրության այդ առաջավորները միաժամանակ հանդիսանում են հումքը և նյութերը կոմպլեքսային ձևով տնտեսող վարպետներ։ Աշխատանքի բարձր արտադրողականության են հասել նաև տասնյակ փականագործներ, խառատներ, ձուլողներ։

Մեծ է դեպոյի լավագույն ստախանովականների թիվը։ Վագոնայինների ավելի քան 30 բրիգադներ միմյանց հետ մրցում են նորոգումները միայն գերազանց որակով կատարելու համար։ Արմատավորելով Լյուբլինոյի ձուլող-մեխանիկական գործարանի նո-

րարարներ Ժանդարովայի և Ագաֆոնովայի աշխատանքի փորձը, տասնյակ բանվորներ արտադրական յուրաքանչյուր օպերացիան սիստեմատիկաբար կատարում են գերազանց։

Դեպոյում գնալով ավելի ու ավելի լայնորեն է ծավալվում սոցիալիստական մրցությունը Կիրովաբադի վագոնային դեպոյի կոլեկտիվի հետ։ Լենինականի վագոնայինները իրենց աշխատանքի դրական փորձը սիրով հաղորդում են իրենց մրցակիցներին, փոխադարձ օգնությամբ աշխատում վագոնների նորոգումը արագ և բարձր որակով կատարելու համար։

Լենինականի երկաթուղային հանգույցի վագոնային դեպոյի կոլեկտիվի եռանդուն աշխատանքը հայտնի է Անդրերկաթուղու բոլոր աշխատողներին։ Արդեն 7-րդ ամիսն է, ինչ կոլեկտիվը հաստատուն կերպով նվաճել և իր ձեռքից բաց չի թողնում Անդրկովկասյան երկաթուղու վարչության լավագույն դեպոների համար սահմանված փոխանցիկ Կարմիր Դրոշը։ Որակական բարձր ցուցանիշների, պետական առաջադրանքները սիստեմատիկաբար գերակատարելու համար բազմաթիվ նորոգողներ, հյուսներ, դարբիններ և առաջատար պրոֆեսիայի ուրիշ աշխատողներ պարգևատրված են ՍՍՌՄ շքանշաններով ու մեդալներով։ Մ. ՆԱԶԱՐՅԱՆ



## ԱԳԻՏԱՑԻԱՆ ՄԵՔԵՆԱՏՐԱԿՏՈՐԱՅԻՆ ԿԱՅԱՆԻ ՄԵԽԱՆԻԶԱՏՈՐՆԵՐԻ ՇՐՋԱՆՈՒՄ

1951 թվականին ավարտելով Երևանի Գյուղատնտեսական ինստիտուտը, Էմմա Խաչատրյանը աշխատանքի անցավ Էջմիածնի № 1 մեքենատրակտորային կայանում, որպես ենթաշրջանային գյուղատնտես։

Մեքենատրակտորային կայանի պարտիական կազմակերպությունը հաշվի առնելով նորավարտ գյուղատնտեսուհու եռանդուն աշխատանքը, նրան նշանակեց տրակտորային վեցերորդ բրիգադի ագիտատոր։ Այդ մեծ վստահությանը արժանանալուց հետո Էմմա Խաչատրյանը ավելի մեծ եռանդով սկսեց դեպի մասսաները տանել և արմատավորել սովետական առաջավոր ագրոբիոլոգիական գիտությունը, սոցիալիստական գյուղատնտեսության նվաճումները, համայնական դաշտերի առաջավորների փորձը։

Իր ունկնդիրների հետաքրքրության լայն շրջանը հնարավորին չափ լրիվին ընդգրկելու համար նա սկսեց համառորեն աշխատել իր վրա։

— Ամենից առաջ ես սկսեցի գյուղատնտեսության վերաբերյալ պարտիայի ու կառավարության վերջին տարիների որոշումների ուսումնասիրությունը, կրկին կարդացի ղեկավար ընկերների ելույթները, խոր կերպով ուսումնասիրեցի ընկեր Ստալինի ելույթները, ճառերը, ցուցումները,— ասում է ընկ. Էմման,— Այդ ինձ հնարավորություն տվեց հետագայում կոնկրետ թեմաների շուրջը կազմակերպվող զրույցները դարձնել նպատակասլաց, մեջբերումներով հիմնավորել իմ ագիտացիոն խոսքը, հարստացնել պարապմունքների բովանդակությունը։

Ունկնդիրների օրավուր աճող հետաքրքրությունը բավարարելու համար գյուղատնտես-ագիտատորը հետևում է ամենօրյա թերթերին, ռադիոհաղորդումներին։

Հավաքելով իր տրամադրության տակ հարուստ նյութ, ագիտատորը մշակում, դասակարգում է այն, որոշում թե ինչ նյութեր պետք է օգտագործել նախընտրած թե-



մայով առաջին պարապմունքի ժամանակ, մշակում իր խոսքը այդ թեմայի մասին։

Ընդհանուր բնույթ կրող հարցերի մասին անհրաժեշտ նյութեր հավաքելուց հետո, ագիտատոր Էմմա Խաչատրյանը իր մոտ գրանցում է տեղական խնդիրների մասին թարմ տեղեկություններ, ընդհանուր բնույթ կրող հարցերը տեղական խնդիրների հետ կապելու համար։

Մեքենատրակտորային կայանի դիրեկտորի քաղգծով տեղակալ ընկ. Սուքիաս Բաբաջանյանն ասում է, որ գյուղատնտես Էմմա Խաչատրյանի ագիտացիոն աշխատանքի հաջողությունը բացատրվում է այն բանով, որ նա լավ է նախապատրաստվում ամեն մի ագիտացիոն պարապմունքի։

Ագիտատոր Էմմա Խաչատրյանի մոտ ուսանելին այն է, որ նա, որպես կանոն, ագիտացիոն պարապմունքները կազմակերպում է ակտիվ մեթոդով։ Ամեն անգամ կոլեկտիվ ընթերցանության կամ զրույցի հիմնական նյութը հաղորդելուց հետո, քննարկման է դնում այն, հրավիրելով ունկնդիրներին արտահայտելու իրենց վերաբերմունքը, եզրակացությունները, զգացմունքները։ Քննար-

կումից հետո ագիտատորը կանգ է առնում իրենց կոլեկտիվի առջև դրված խնդիրների վրա, բացատրում ունկնդիրների պարտականությունները, հրապարակում թվեր նրանց արտադրական առաջադրանքների կատարման մասին և այսպիսով ագիտացիոն պարապմունքին տալիս գործնական բնույթ։

Գյուղատնտեսական դաշտային աշխատանքների շրջանում առաջինը նախաձեռնելով մեքենա-տրակտորային կայանի մեխանիզատորների սոցիալիստական մրցումը, Էմմա Խաչատրյանը ագիտացիոն բոլոր պարապմունքների ժամանակ անդրադառնում է այդ հարցին, տարբեր առիթներով։

Սոցիալիստական մրցության ընթացքում ագիտատորը նկատեց, որ մեխանիզատորներ Բաղդասար Բաղդասարյանը, Կոլյա Պատիրյանը ոչ միայն չեն կատարում մրցության մեջ վերցրած իրենց պարտավորությունները, այլև օրվա առաջադրանքները։ Տրակտորային բրիգադի համար վտանգը մեծ էր. նախ՝ բրիգադը կարող էր ետ մնալ հարևան 5-րդ բրիգադի հետ ունեցած սոցիալիստական մրցության մեջ, և վերջապես՝ դրանով մեքենատրակտորային կայանը լրիվին կատարած չէր լինի կու-



տնտեսության հանդեպ ունեցած իր պայմանագրային պարտավորությունները։

Ագիտատորը նախօրոք լավ ուսումնասիրեց աշխատանքում ետ մնացող Բաղդասարյանի և Պատիրյանի աշխատանքի պայմանները, աշխատանքային ժամերը նպատակահարմար օգտագործելու, տրակտորները արտադրական լրիվ կարողությամբ աշխատեցնելու նրանց գործադրած եղանակները։ Հավաքելով իր մոտ անհրաժեշտ բոլոր տեղեկությունները, նա մի պարապմունք նվիրեց այդ հարցին։ Պարապմունքի ժամանակ բացահայտեց, որ այդ ընկերների ետ մնալու պատճառը այն է, որ նրանք լրիվ չեն օգտագործում աշխատանքային ժամերը։ Ագիտատորից հետո, Բաղդասարյանի և Պատիրյանի ընկեր մեխանիզատորները իրենց ելույթներում դատապարտեցին ետ մնացողներին, ցույց տվեցին, թե բրիգադն ինչքան է վնասվել նրանց անկանոն աշխատանքի պատճառով, և եթե այդպես շարունակվի, վնասն ինչ չափերի կարող է հասնել։ Իրենց ելույթներում տրակտորիստներ Բաղդասարյանն ու Պատիրյանը ընկերների դիտողությունները համարելով ճիշտ, խոստացան բարելավել

իրենց աշխատանքը: Նրանք կատարեցին իրենց խոստումը:

Ագիտացիոն պարապմունքի միջոցով կազմակերպված ընկերական ներգործության շնորհիվ, բրիգադում ետ մնացողները դարձան սոցիալիստական մրցության առաջավորներ:

Ագիտատոր Էմմա Խաչատրյանի տեսադաշտից չեն վրիպում երիտասարդ կադրերը: Նրանց տեխնիկական ուսուցման, ընկերական օգնության կազմակերպումը միշտ էլ եղել է նրա ուշադրության կենտրոնում: Այսպես, օրինակ, ագիտատորի կազմակերպած օգնության շնորհիվ մեքենատրակտորային կայան եկած երիտասարդ Սերյոժա Բաղդասարյանը արագորեն ուսումնասիրեց տրակտորը, հմուտ մեխանիզատորներից սովորեց տրակտորի ղեկավարման գործը և այժմ նա աշխատում ու մրցում է իր վարպետների հետ:

Մեխանիզատորների շրջանում իր կազմակերպած քաղաքական-մասսայական աշխատանքը անպայման գործնական հետևանքների հասցնելու համար Էմմա Խաչատրյանը լայնորեն օգտագործում է գյուղատնտեսական իր գիտելիքները:



Ցույց տալով, որ յուրաքանչյուր մեխանիզատոր կոլտնտեսականների հետ հավասարապես շահագրգռված է բամբակի և այլ գյուղատնտեսական կուլտուրաների բարձր բերքի համար, նա մեխանիզատորներին բացատրում է սովետական առաջավոր ագրոբիոլոգիայի հիմունքները, նրանց կենսագործման եղանակները: Շատ հաճախ ագիտատորը զրույցներ է կազմակերպում գյուղատնտեսական այս կամ այն թեմայի շուրջը, ցույց տալով յուրաքանչյուրի անելիքը բարձր բերք ստանալու համար: Այսպես, օրինակ, Հոկտեմբերյանի բամբակագործների կոչին Էջմիածնի № 1 մեքենատրակտորային կայանի բոլոր բրիգադներից առաջինը արձագանքեցին տրակտորային 6-րդ բրիգադի մեխանիզատորները: Այդ կոչի քննարկումից առաջ ագիտատորը մշակեց առաջադրանքներ 1952 թվականին բամբակի կայուն և բարձր բերք ստանալու համար մեխանիզատորների անելիքների մասին: Մասսայականացնելով Հոկտեմբերյանի շրջանի բամբակագործների կոչը, ագիտատորը շարադրեց իրենց անելիքները,

հրավիրելով ունկնդիրներին արտահայտվել այդ մասին։ Մեխանիզատորները ջերմորեն արձագանքեցին կոչին, վերցնելով նոր պարտավորություններ, որոնց կատարմանը հետևում է գյուղատնտես-ագիտատորը։

Էջմիածնի № 1 մեքենատրակտորային կայանի վեցերորդ բրիգադը կայանի առաջավոր կոլեկտիվներից է։ Գարնանացանի պլանը կատարելով 123 տոկոսով, բրիգադը տնտեսեց 1353 կիլոգրամ վառելիք։ Օրավուր ծավալվող սոցիալիստական մրցության շնորհիվ՝ գյուղատնտեսական աշխատանքների հետագա շրջանում բրիգադը չի զիջում առաջնությունը։

Ագիտատոր Էմմա Խաչատրյանը բացատրական-մասսայական աշխատանքի միջոցով բարձրացնում է մեքենատրակտորային կայանի մեխանիզատորների քաղաքական ակտիվությունը, աշխատանքային խանդավառությունը, կազմակերպում նրանց ուժերը 1952 թվականը բարձր և կայուն բերքի տարի դարձնելու ընդհանուր նպատակի իրականացման համար։

Գ. ԲԱԼԱԴՅԱՆ

---



# ԲՈԼՇԵՎԻԿՅԱՆ ԱԳԻՏԱՑԻԱՆ ՊԵՏՔ Է ՀԵՏԱՊՆԴԻ ԳՈՐԾՆԱԿԱՆ ՆՊԱՏԱԿՆԵՐ

Աշխատավորների շրջանում տարվող քաղաքական-մասսայական աշխատանքի նպատակասլացությունը, կոնկրետությունը, գործնական հետևանքներ հետապնդելը համարվում են բոլշևիկյան ագիտացիայի հիմնական գծերից և դրսևորում են նրա մեծագույն դերը մասսաների սոցիալիստական գիտակցության բարձրացման, աշխատանքում նրանց ուժերը մոբիլիզացնելու գործում։

Դեռևս 1902 թվականին Վ. Ի. Լենինը իր «Ի՞նչ անել» աշխատությունում մերկացնելով «էկոնոմիստների» օպորտունիզմը, ընդգծել է մարքսիստական պրոպագանդայի և ագիտացիայի գործնական բնույթը։

Ձգտելով քաղաքական աշխատանքը ծառայեցնել իրենց օպորտունիստական նպատակների կենսագործմանը, «էկոնոմիստնե-

րը» պրոպագանդային վերապահում. էին միայն թեորիապես բացատրել ժամանակակից հասարակակարգի էությունը, իսկ ագիտացիային՝ միայն գործնական-կազմակերպական խնդիրներ։ Այսպիսով ստացվում էր, որ պրոպագանդան պետք է հեռու կանգնած լինի գործնական հարցերից, կտրված լինի կյանքից, իսկ ագիտացիան՝ թեորիայից։

Մերկացնելով «էկոնոմիստների» օպորտունիզմը այս հարցում ևս, Վ. Ի. Լենինը սահմանազծեց պրոպագանդայի և ագիտացիայի տարբերությունը, բացահայտեց նրանց մեջ եղած ընդհանուրն ու միասնությունը։ Վ. Ի. Լենինը իր «Ի՞նչ անել» աշխատության մեջ մշակելով մեր պարտիայի իդեոլոգիական հիմունքները, մատնանշեց, որ մարքսիստական պրոպագանդայում և ագիտացիայում հավասարապես պետք է դրսևորվի ռևոլյուցիոն պրակտիկայի և խոր գիտական թեորիայի միասնությունը, որպես ընդհանուր երևույթ քաղաքական աշխատանքի այդ երկու ձևերի համար, ընդգծելով, որ տարբերությունը նրանց ծավալի ու խորության մեջ է։ Պրոպագանդիստը թեորիապես խորը կերպով բացատրելով գոյություն ունեցող հասարակական կարգերի



այս կամ այն դրսևորումը, շատ գաղափարներ է տալիս, իսկ ագիտատորը խոսելով այդ նույն հարցի շուրջը, վերցնում է ամենքին հայտնի փաստերը և նրանց օգնությամբ քիչ գաղափարներ է տալիս, երևույթների լիակատար բացատրությունը թողնելով պրոպագանդիստին։

Մասսաներին գործնական աշխատանքի կոչելը, գործնական նպատակներ հետապնդելը պետք է լինի թե պրոպագանդիստի ղեկուցման և թե ագիտատորի զրույցի քաղաքական-տնտեսական նպատակը։

Նշելով մեր պարտիայի պրոպագանդիստական, ագիտացիոն աշխատանքի խնդիրները, Վ. Ի. Լենինը 1920 թվականի նոյեմբերին, ժողովրդական կրթության նահանգական և գավառային բաժինների քաղլուսվարների համառուսաստանյան խորհրդակցությունում ասում էր.

«Մեր գլխավոր քաղաքականությունը այժմ պետք է լինի՝ պետության տնտեսական շինարարությունը... Եվ դրա վրա պետք է կառուցված լինի ամբողջ ագիտացիան և ամբողջ պրոպագանդան... Յուրաքանչյուր ագիտատոր՝ պետք է լինի պետական ղեկավար, բոլոր գյուղացիների և բանվորների ղեկավարը տնտեսական շինարարության

գործում... Կոմունիզմը պետք է մատչելի դառնա բանվորական մասսաներին, ինչպես սեփական գործը... Հարկավոր է վերադաստիարակել մասսաներին, իսկ վերադաստիարակել նրանց կարող է միայն ագիտացիան և պրոպագանդան, պետք է մասսաները կապել ընդհանուր տնտեսական կյանքի շինարարության հետ՝ առաջին հերթին։ Սա պետք է լինի յուրաքանչյուր ագիտատորի-պրոպագանդիստի աշխատանքում գլխավորն ու հիմնականը, և երբ նա այդ կյուրացնի, այն ժամանակ նրա աշխատանքի հաջողությունը ապահովված կլինի»։

Այս տեսակետից էլ այժմ ավելի, քան երբևէ, մասսաների շրջանում տարվող քաղաքական աշխատանքը պետք է սերտորեն առնչվի կյանքի հետ, ագիտացիոն աշխատանքի բովանդակությունը հագեցվի բանվորների, կոլտնտեսականների, ինտելիգենցիայի աշխատանքի հարցերի բովանդակությամբ։ Մեր սոցիալիստական Հայրենիքի փառքին ու հզորությանը, սովետական պետության վարած ներքին և արտաքին քաղաքականությանը, մեր հասարակության ապագային, կամ նման այլ թեմաներով կազմակերպվող ագիտացիոն ամեն մի զրույց, դեկուցում հմտորեն պետք է կապակցվի տե-



ղական կոնկրետ խնդիրների հետ։ Միայն այդ կերպ կազմակերպված քաղաքական աշխատանքը կլինի նպատակասլաց, կոնկրետ։ Այդ կերպ միայն ագիտացիան մասսաների սոցիալիստական գիտակցության բարձրացման հետ կտոգորի, կկազմակերպի մասսաներին կոմունիզմի կառուցման տեմպերն արագացնելու գործում։

Ագիտացիոն աշխատանքի փորձը ցույց է տալիս, որ այն դեպքում, երբ համապետական, ընդհանուր բնույթ կրող հարցերը կապվում են տեղական խնդիրների հետ, այդ դեպքում միայն ագիտացիոն աշխատանքը տալիս է գործնական հետևանքներ։ Այլ կերպ քաղաքական աշխատանքը կլինի ինքնանպատակ, ինչպես ասում են՝ ագիտացիան ինքն իրեն համար, կյանքն ինքն իրեն համար։

Սովետական Միության վարած խաղաղասիրական քաղաքականության մասին ամեն մի զրույց պետք է անպայման կապվի տեղական խնդիրների հետ։ Սովետական Միությունը ամբողջ աշխարհում խաղաղության պաշտպանության հզոր ամրոցն է։ Նրա հզորությունը է՛լ ավելի բարձրացնելու գործի վրա աշխատում են բոլորը, պատե-

ռազմի վտանգը հեռու վանելու, խաղաղ ըս-
տեղծարար աշխատանքը շարունակելու հա-
մար։ Ագիտատորի խնդիրն է կազմակերպել
յուրաքանչյուր ունկնդրի ակտիվ մասնակ-
ցությունը մեր երկրի տնտեսական-քաղա-
քական հզորության է՛լ ավելի ամրապընդ-
ման գործին և դրանով իսկ՝ խաղաղության
պաշտպանության նվիրական գործին։

Բոլշևիկների պարտիայի և սովետական
կառավարության ամեն մի միջոցառման, ա-
մեն մի նախաձեռնության նպատակայա-
յությունը պարզաբանելուց հետո, ագիտա-
տորը պետք է այն կապի տեղական խըն-
դիրների հետ, պարզաբանի իր ունկնդիրների
անելիքները, գլխավորի մարդկանց քաղա-
քական ակտիվությունը, աշխատանքային
խանդավառությունը, մղի նրանց այսօր
աշխատելու ավելի լավ, քան երեկ, վաղը ա-
վելի լավ, քան այսօր։

Կոմունիզմի մեծ կառուցումների շինարա-
րությունը մասնակցում է մեր ամբողջ երկի-
րը։ Պարզաբանելով ունկնդիրներին, թե ինչ
կտան կոմունիզմի կառուցումները մեր երկ-
րին, ագիտատորը պետք է պարզաբանի յու-
րաքանչյուրի անելիքը այդ գործում, այն
հաշվով, որ ամենուրեք կոմունիզմի կառու-



ցումների պատվերները կատարվեն ժամա-
նակին և բարձր որակով։

Քաղաքական-մասսայական աշխատանքի
միջոցով՝ բոլշևիկների պարտիան հսկայա-
կան հաջողություններ է ձեռք բերել մեր
երկրի մարդկանց կոմունիստական դաս-
տիարակության գործում։ Պարտիան հետե-
վողականորեն կենսագործելով Լենինի—
Ստալինի ցուցումները, սովետական մարդ-
կանց մեջ դաստիարակել է այնպիսի բարձր
բարոյական հատկություններ, ինչպես նվիր-
վածությունն է Կոմունիզմի մեծ գործին,
անձնվեր սերը դեպի սոցիալիստական Հայ-
րենիքը և ատելությունը դեպի նրա թշնա-
միները, իր պարտքի գիտակցումը հարազա-
տության հանդեպ, մասսայական հերո-
սությունը աշխատանքի մեջ և այլն։

Պարտիական կազմակերպությունների
մարտական օգնականներ ագիտատորների
խնդիրն է՝ է՛լ ավելի ամրապնդել սովետա-
կան մարդկանց բարձր բարոյական հատ-
կությունները, կազմակերպել նրանց ուժերը,
յուրաքանչյուրի ակտիվ մասնակցությունը
կոմունիզմի կառուցման գործին։

Տ. ՎԱՐԺԱՊԵՏՅԱՆ

# ԻՆՉՊԵՍ ԿԱԶՄԱԿԵՐՊԵԼ ԽՈՏՀՈՒՆՁԸ ԵՎ ԱՆԱՍՆԱԿԵՐԻ ՍԻԼՈՍԱՑՈՒՄԸ

*Սոցիալիստական անասնապահության ա-
ճող պահանջները լրիվին բավարարելու
համար, բարձրարժեք և բազմատեսակ բուսա-
կան անասնակերերի կուտակումը հանդի-
սանում է սոցիալիստական գյուղատնտեսու-
թյան ամենակարևորագույն խնդիրներից
մեկը, որպես անասնապահության բոլոր
ճյուղերի վերելքի համար անցկացվող մի-
ջոցառումների ընդհանուր շղթայի կարևոր
օղակը: Ահա թե ինչու այժմ ավելի, քան եր-
բևէ, հրամայական խնդիր է դարձել՝ ավե-
լացնել անասնակերի արտադրանքը, կուտա-
կել անհրաժեշտ քանակությամբ խոտ, սի-
լոս, արմատապտուղներ և հնարավորության
սահմաններում նաև խտացված կերեր:*

*Խոտը կենդանիների կերի հիմնական տե-
սակներից մեկն է: Լավ խոտը իր սննդարա-
րությամբ մոտենում է խտացված կերերին,
իսկ որոշ նյութերի պարունակությամբ՝ նույ-*



*նիսկ գերազանցում է նրանցից: Խոտի
սննդատվությունը, այսինքն նրա կերային
արժեքը պահպանելու համար կոլտնտեսու-
թյունները պետք է լրիվին օգտագործեն
բարձրորակ խոտ կուտակելու բոլոր հնարա-
վորությունները, ժամանակին սկսեն խոտ-
հունձը, վերջինս կատարեն սեղմ ժամկետ-
ներում, ճիշտ հավաքեն, չորացնեն և պահ-
պանեն այն:*

*Խոտհունձը կատարել ժամանակին— նշա-
նակում է մեծ քանակությամբ լավ խոտ ըս-
տանալ: Հայտնի է, որ խոտի տեսակների
մեծ մասը ծաղկելուց առաջ առավելագույն
քանակությամբ դյուրամարս սննդարար
նյութեր ու վիտամիններ է պարունակում:
Ծաղկելու պահից բույսերը սկսում են սնըն-
դանյութեր ծախսել սերմեր գոյացնելու հա-
մար: Սերմերի հասունացման պահին խոտի
մեջ մնում է մեկ երրորդից քիչ ավելին այն
սննդանյութերից, որոնք պարունակվում են
նրա մեջ հացազգիների հասկակալման և
թիթեռնածաղկավոր բույսերի կոկոնավոր-
ման շրջանում: Բերքահավաքի ուշացումը
սննդատու նյութերի մեծ կորուստի պատ-
ճառ է հանդիսանում: Կարևոր է կանաչ խո-
տը հնձել այն հասակում, երբ նրա բոլոր
քնքույշ մասերը (տերևները, ծաղիկները)*

հնձելու ժամանակ չեն թափվում: Ուստի խոտը պետք է հնձել հացազգիների հասկակալման և թիթեռնածաղիկ բույսերի կոկոնավորման շրջանում: Մի քիչ ավելի ուշ պետք է հնձել միայն այն խոտերը, որոնց բոլոր ծաղիկները միաժամանակ չեն ծաղկում և ծաղկման շրջանը երկար է տևում: Փորձը ցույց է տվել, որ հասկակալման սկզբին հնձված սիզախոտով կերակրելիս կովի կաթնատվությունը 25 տոկոսով ավելի բարձր է լինում, քան ծաղկման շրջանում հնձված սիզախոտով կերակրելիս:

Խոտհնձի հաջող կազմակերպման անհրաժեշտ պայմաններից է նաև ճիշտ կազմած օրացուցային պլանը: Համաձայն օրացուցային պլանի խոտհնձի տևողությունը պետք է լինի 10—15 օր: Պետք է ուշի ուշով հետևել բուսականության աճման վիճակին և հունձը սկսել ընտրովի: Խոտհունձը վաղ կատարելու դեպքում հաջորդ հունձը լավ բերք է տալիս, մանավանդ, եթե առաջին հնձից հետո խոտհարքները պարարտացված են հանքային պարարտանյութերով կամ ողբահեղուկով: Տնտեսությունների արտադրական պլաններում անհրաժեշտ է նախատե-



սել բնական մարգագետինների երկրորդ հունձ, իսկ ցանովի խոտերի 3—4 հունձ:

Հունձը ժամանակին կատարելուց հետո, խոտի որակը կախված է այն բանից, թե ինչպես է կատարվել խոտի չորացումը, երբ և ինչպես է դարսվել խոտը պահելու համար:

Խոտի չորացումը անհրաժեշտ է կատարել ավելի կարճ ժամանակամիջոցում: Լավ, լիարժեք խոտ կարելի է ստանալ միայն ճիշտ չորացնելու դեպքում, երբ լրիվ կերպով պաշտպանվում են բույսի ամենասննդարար մասերը՝ ծաղիկները և տերևները: Հնձված խոտը դեռ որոշ ժամանակ շարունակում է ապրել, նրանում տեղի են ունենում ֆիզիոլոգիական պրոցեսներ, որոնց վրա ծախսըվում է սննդանյութերի և վիտամինների մի մասը: Հետևաբար, որքան ավելի երկար է տևում չորացումը, այնքան ավելի սննդանյութեր և վիտամիններ են կորչում:

Խոտի պահպանումը կախված է ճիշտ դիզելուց: Ահա թե ինչու դեզերը դարսելու համար կոլտնտեսությունների վարչությունները պետք է առանձնացնեն փորձված կոլտնտեսականների: Դեզի լավագույն չափն է. բարձրությունը՝ 6—8 մետր, լայնությունը՝

4—6 մետր և երկարությունը ոչ պակաս՝ 12—15 մետր, խորից 50 մետրից ոչ պակաս հեռավորության վրա և շենքերից ոչ պակաս, քան 200—250 մետր հեռավորության վրա։

Շատ կոլտնտեսություններում կոշտ կերերի զգալի մասը կազմում են ծղոտը և դարմանը։ Նրանք բավականին բարձր կերային արժեք ունեն, մանավանդ եթե նրանք կերակրումից առաջ մշակվեն կարբիդի շլամով և դաջով։

Հյութալի կերերը հանդիսանում են անասունների կերաբաժնի անհրաժեշտ մասը։ Նրանք լավացնում են օրգանիզմի ընդհանուր դրությունը, բարձրացնում են անասունների մթերատվությունը, մանավանդ կթու կովերինը։ Հյութալի կերերի գործադրումը թույլ է տալիս կրճատելու խտացված կերերի ծախսումը, ինչպես նաև լրիվ չափով օգտագործելու կոշտ, մանավանդ ծղոտային կերերը։

Հյութալի կերերի շարքին են պատկանում արմատապալարապտուղները, բոստանային և սիլոսային կուլտուրաները։ Արմատապտուղները պահանջում են լավ մշակված և պարարտացված հողեր, ցանքսերի լավ խնամք, որը կազմված է միջշարքային փխրեցումից (ոչ պակաս քան երեք անգամ), քաղհանից (ոչ պակաս երկու անգամից) աղբահեղուկով և այլ պարարտանյութերով մեկ երկու անգամ սնուցելուց։



Շատ կարևոր և արժեքավոր հյութալի կերերից է սիլոսը, որը ըստ էության հանդիսանում է կոնսերվացված կանաչ կեր։ Նրանով կարելի է կերակրել անասուններին ամբողջ տարվա ընթացքում։ Սիլոսը առանձնապես անհրաժեշտ է կթու կովերի համար։ Կովին կերակրելով 3—4 տոննա լավ սիլոսով, հնարավոր կլինի ստանալ լրացուցիչ մեկ տոննա կաթ։

Սիլոսային կուլտուրաները պետք է հավաքել այն շրջանում, երբ բույսերի մեջ կուտակվել են ամենաշատ քանակի սննդարար նյութեր։ Օրինակ, եգիպտացորենը պետք է հավաքել հասունացման մոմային շրջանում, արևածաղիկը՝ ծաղկման սկզբում, կերի կաղամբը կարելի է հավաքել ուշ աշնանը՝ բոլոր դաշտային աշխատանքներն ավարտելուց հետո։

Սիլոսացումը կարելի է կատարել ամբողջ ամառվա և աշնան ընթացքում։ Ամառվա սկզբում սիլոսը պատրաստում են մոլախո-

տերից և հատուկ սիլոսային կուլտուրաներից, իսկ աշնանը կերի կաղամբից, բանջարա-բոստանային կուլտուրաների մնացորդներից: Շատ կարևոր է, մինչև հացահատիկների բերքահավաքն սկսելը, սիլոսի պատրաստման պլանը կատարել ոչ պակաս, քան 80 տոկոսով:

Սիլոսի որակը կախված է նրա պատրաստման կանոնների պահպանումից: Սիլոսի մասսան պետք է ունենա 65—75 տոկոս խոնավություն: Հորերը պետք է լցնել 1—2 օրվա ընթացքում, իսկ աշտարակները ոչ ավելի քան 3—4 օրում: Սիլոսանյութը մանրում, անմիջապես լցնում և պինդ մամլում են, որպեսզի օդը դուրս գա, որովհետև օդի ներկայության դեպքում սկսվում է փտումը և կերը փչանում է:

Հանրային անասնապահության համար կուտակված կերերի նկատմամբ կառավարության կողմից սահմանված է հաշվառման և օգտագործման կարգ: Բոլոր տեսակի կերերը հավաքելուց հետո, պետք է կշռվեն կամ չափվեն և ձմռան համար ակտով պահպանման հանձնվեն համապատասխան անձնավորություններին:

Զոոտեխնիկ՝ Լ. ԳՐԻԳՈՐՅԱՆ

ՕԳՏԱԳՈՐԾԻՐ ԶՐՈՒՅՑԻ ԺԱՄԱՆԱԿ

## ԱՏԵԼՈՒԹՅՈՒՆԸ ԴԵՊԻ ԱՄԵՐԻԿՅԱՆ ՕԿՈՒՊԱՆՏՆԵՐԸ

Համաշխարհային երրորդ պատերազմի նախապատրաստվելով, ամերիկյան իմպերիալիստները ռազմական բազաներ են ստեղծում երկրագնդի բոլոր մասերում՝ Սովետական Միության և ժողովրդական դեմոկրատիայի երկրների վրա հարձակվելու համար: Ամերիկյան զորքերը գրավել են Ֆրանսիայի, Անգլիայի, Իտալիայի և Արևմտա-եվրոպական մյուս պետությունների բազմաթիվ աերոդրոմները, նավահանգիստները, ռազմա-ծովային բազաները:

Արևմտա-եվրոպական երկրների բնակչությունը խորապես ատում է ամերիկյան ռազմամոլներին, և այդ ատելությունն օրեցօր աճում է: Ազգային անկախության համար, ամերիկյան օկուպացիայի դեմ մղվող պայքարը համաժողովրդական բնույթ է ընդունում: Ամերիկյան օկուպանտների նկատմամբ տածած իրենց ատելության մասին են գրում Ֆրանսիայի, Անգլիայի, Իտալիայի, Բելգիայի, Դանիայի և այլ երկրների աշխատավորները՝ Սովետական Միություն ուղարկած նամակներում:

Ստորև տպագրում ենք այդ նամակներից մի քանիսը:

***

«Մեր երկրին են ժամանել նոր օկուպանտներ, որոնք է՛լ ավելի ատելի են, քան նացիստները։ Ամերիկյան ֆաշիստները Կորեայում կատարած իրենց գազանություններով ցույց տվին, որ իրենք ավելի վատ են, քան գերմանական ֆաշիստները։ Ազատասեր ժողովուրդները ատում են ամերիկյան զավթիչներին, որովհետև նրանց մեջ տեսնում են սպրկացնողների, որոնք թշվառություն և մահ են բերում աշխատավորներին։ Ամերիկյան օկուպանտների կեղծ պրոպագանդան միայն ուժեղացնում է ֆրանսիական պրոլետարների զայրույթն ու ցասումը։ Նրանց ամեն քայլափոխում հետապնդում են՝ «Ամերիկացիներ, կորեք Ամերիկա» մակագրությունները։ Այդ մակագրությունները նրանք տեսնում են անգամ իրենց նավերի և ավտոմեքենաների վրա։ Ֆրանսիական ժողովուրդը իր երկրի սահմաններից դուրս կշպրտի ռազմական հանցագործներին և երեխաներին սպանողներին։ Ամերիկացիները կվռնդվեն Ֆրանսիայից»։

ՌԵՆԵ Դ. *(Նեբքին Լուարա, Ֆրանսիա)*

***

«Իտալական հողը ներխուժել են ամերիկյան զորքեր։ Նրանք անց են կացնում ցամաքային և ծովային ուժերի մանևրներ։ Կառավարությունը նրանց տրամադրության տակ է դնում նավահանգիստներ, աերո-



դրոմներ, հողային մեծ տարածություններ և բնակելի շենքեր, այն ժամանակ, երբ հսկայական թվով իտալացիներ ստիպված են ապրել հետնաբակերում և քարանձավներում՝ բնակարաններ չլինելու պատճառով։ Դե Գասպերիի կառավարությունը միլիարդներ է ծախսում սպառազինության համար։ Փակվում են ֆաբրիկաներն ու գործարանները, որովհետև կառավարությունը պատրաստի ապրանքները ստանում է իր ամերիկյան տերերից։ Դրա հետևանքով ավելանում է գործազուրկների թիվը, աճում է աղքատությունը։ Մեր երկրի աշխատավորները բողոքում են ամերիկացիների կողմից Իտալիայի կեղեքման դեմ»։

Ս. Նումելինո *(Իտալիա)*

***

«Պատերազմի ատլանտյան հրձիգները Բելգիայում պատերազմի տենդագին պատրաստություն են տեսնում։ Երկրում խիստ դադարեցված է նոր տների, դպրոցների և քաղաքացիական մյուս շենքերի կառուցումը, որովհետև կառավարությունը դրա համար անհրաժեշտ միջոցները օգտագործում է համաշխարհային նոր պատերազմ պատրաստելու նպատակով։

Անտվերպենի արվարձանում և Լիմբուրգում տեղավորված են ամերիկյան և անգլիական զորքեր։ Իշխանությունները գյուղացիներին դուրս են քշում իրենց հողերից։ Այդ հողերը հատկացվում են ամերիկյան զինվորականությանը՝ ավիացիոն նոր բազա-

ներ կառուցելու համար։ Անընդհատ ամերիկյան ռմբակոծիչներ, տանկեր, հրանոթներ են բերվում Լյեժ և մյուս շրջանները։ Աերոդրոմների կառուցումը հարյուր միլիոնավոր ֆրանկ է նստում մեզ վրա։ Ամերիկյան պարոնները, քողարկվելով խաղաղության վերաբերյալ կեղծ ֆրազներով, պատրաստվում են մեր երկրում պատերազմելու, սպանելու, կործանելու»։

Շառլ Կ. Լյեժ (Բելգիա)

***

«Ատլանտյան պակտը դեռ նոր էր կնքվել, երբ մենք՝ իտալացիներս, հասկացանք, որ այն ստեղծվել է ոչ թե խաղաղություն հաստատելու համար, այլ՝ համաշխարհային երրորդ պատերազմ պատրաստելու համար։ Չնայած այդ պակտի հետապնդած հանցավոր նպատակներին, մեր պարագլուխները՝ դե Գասպերիի գլխավորությամբ, նրա մեջ ներքաշեցին մեր երկիրը։ Այժմ միլիոնավոր իտալացիներ սեփական աչքերով տեսնում են, թե ինչ է նշանակում իտալացիների մասնակցությունը իմպերիալիստների դավադրությանը։ Ավելի ու ավելի մեծ թվով ամերիկացիներ են ժամանում մեր երկիրը։ Դա միայն վիշտ է բերում մեր երկրին, Մեզ էլ ավելի ծանր ճակատագիր է սպասում, քան ապրեցինք անցյալ պատերազմի ժամանակ։ Ամերիկացիներն այն ժամանակ իրենց բարբարոսական ռմբակոծություններով ավերեցին Իտալիայի շատ քաղաքներն ու գյուղերը։ Այն ժամանակ բնա-



կարանից զրկված մարդիկ մինչև այժմ էլ ապրում են հյուղակներում և երկաթի խլամից պատրաստված քոլիկներում։ Այստեղ, Ուդինայում աճել է մի ամբողջ ավան, որը կոչվում է «Երկաթե» ավան։ Հազարավոր անօթևան իտալացի ընտանիքներին բնակարանով ապահովելու փոխարեն՝ մեր կառավարողները մտահոգված են Իտալիայում ամերիկացիներին տեղավորելով։ Մենք կգործադրենք մեր բոլոր ջանքերը՝ օտարերկրացիներին մեր տներից վռնդելու համար»։

Մի խումբ աշխատավորներ՝ Ուդինայից (Իտալիա)։

***

«Ես ընդամենը 18 տարեկան եմ, բայց ինձ բավականաչափ հասունացած եմ համարում՝ ագրեսիայի իմպերիալիստական քաղաքականությունը հասկանալու համար։ Մենք՝ անգլիացիներս, օրավուր մեզ համար ավելի ենք պարզում, թե ինչու Անգլիային ԱՄՆ-ի 49-րդ նահանգ են կոչում։ Ամերիկյան «բարերարները» քայքայում են մեր երկիրը, փորձելով այն վերածել իրենց ագրեսիայի բազայի։ Բայց մենք այստեղ, Անգլիայում, վճռականապես դեմ ենք տեղավորված ամերիկացիներին, որոնք զավթել են մեր հողը՝ իրենց աերոդրոմների համար։ Վերջերս իմ հայրը գնացել էր Քենսինգտոն։ Նա խորապես վրդովված էր այն բանի դեմ, որ նրա ճանապարհը կտրել է երթևեկող յանկիների շարասյունը, որը երկար ժամանակ կանգնեցրել էր երթևեկությունը։ Ամերիկացիները մեզ մոտ նույքան լկտի են պահում իրենց,

ինչպես նվաճված երկրներում։ Մեր ժողովրդի մեծ մասը խորապես վրդովված է այն բանից, որ Անգլիայում տեր ու տնօրինություն են անում յանկիները»։

Մի պատանի՝ Բրիստոլից (Անգլիա)

***

«Խաղաղության մեր պայքարը կազմվում է, առաջին հայացքից, այնպիսի փոքր գործերից, որոնք վտակներից կազմվող գետի նման մի այնպիսի ահեղ ուժ են դառնում, որն ընդունակ է սանձելու պատերազմի հրձիգներին։ Մեր ամենօրյա պայքարն այն է, որ մենք պոկում ենք ծախու ֆրանսիական ռադիոյի աֆիշաները և նրանց փոխարեն փակցնում պլակատներ հետևյալ մակագրություններով. «Ամերիկացիներ, կորեք Ամերիկա»։ Մենք այդ անում ենք, որպեսզի ամերիկացիներն զգան այն ատելությունը, որ մենք տածում ենք իրենց նկատմամբ և որպեսզի մեր կառավարողներն էլ գիտենան, որ իրենք վարում են ժողովրդին թշնամի քաղաքականություն։

Մենք խաղաղության լայն կամպանիա ենք մղում, ստորագրություններ ենք հավաքում խաղաղության Պակտ կնքելու վերաբերյալ Դիմումի տակ և որտեղ հնարավոր է դեմոկրատական գրականություն ենք վաճառում։ Մենք կարող ենք և պետք է մեր կողմը գրավենք այն մարդկանց, որոնց մոլորեցրել է պատերազմի հրձիգների պրոպագանդան, ամբողջ ժողովրդին պայքարի հանենք հանուն խաղաղության»։

Մարգարիտ Ռ. Անեից (Ֆրանսիա)։



# ԹԵՄԱՆԵՐ, ՊԼԱՆՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## 1. ԱՐՏԱԴՐՈՂԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ ԱՆԸՆԴՀԱՏ ԲԱՐՁՐԱՑՆԵԼԸ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ ԵՎ ՏՐԱՆՍՊՈՐՏԻ ԱՇԽԱՏՈՂՆԵՐԻ ԿԱՐԵՎՈՐԱԳՈՒՅՆ ԽՆԴԻՐՆ Է

1. Աշխատանքի արտադրողականության բարձրացումը ամենակարևորն ու գլխավորն է կոմունիզմի շինարարության գործում։

2. Մեր երկրում հաղթանակած սոցիալիստական հասարակակարգը անսահման հնարավորություններ է ստեղծում աշխատանքի արտադրողականության բարձրացման համար։

3. Սովետական առաջավոր տեխնիկայի անընդհատ զարգացումն ու կատարելագործումը, արտադրության մեքենայացումն ու ավտոմատացումը, նոր տեխնոլոգիայի արմատավորումը աշխատանքի արտադրողականության բարձրացման հիմքն են։

4. Արտադրության աշխատողների կողմից նոր տեխնիկային տիրապետելը, տեխնոլոգիական պրոցեսները անթերի կիրառելը, տեխնիկան արտադրական լրիվ կարողությամբ օգտագործելը՝ աշխատան-

քի արտադրողականության բարձրացման, արտադրանքի քանակական և որակական ցուցանիշների բարձրացման վճռող պայմաններն են։

5. Արտադրության մեջ աշխատող բոլոր բանվոր-բանվորուհիների կողմից միջին պրոգրեսիվ նորմաների սիստեմատիկ կատարումը, ձեռնարկության ռիթմիկ աշխատանքը՝ ամեն մի կոլեկտիվի առջև դրված խնդիրների անթերի կատարման երաշխիքներն են։

6. Սոցիալիստական մրցության ծավալումը, արտադրության առաջավորների փորձի մասսայականացումն ու արմատավորումը արտադրական պլանների գերակատարման լավագույն միջոցներն են։

7. Բոլշևիկյան քննադատությունն ու ինքնաքննադատությունը աշխատանքի արտադրողականության բարձրացման գործում աշխատավորների ստեղծագործական նախաձեռնության առաջ մղող ուժն է։

8. Ի՞նչ է արվում մեր ձեռնարկության մեջ աշխատանքի արտադրողականության բարձրացման ուղղությամբ։

## ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Վ. Ի. ԼԵՆԻՆ.— Մեծ նախաձեռնություն։ *Ընտիր երկեր 2 հատորում. Հատ. 2-րդ, էջ 505, Հայպետհրատ, 1948 թ.։*

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.— Ճառ՝ արտասանած ստախանովականների Համամիութենական առաջին խորհրդակ-



ցությանը։ *«Լենինիզմի հարցերը», 11-րդ հրատ., էջ 602—617, Հայպետհրատ։*

Ա. Ի. ՄԻԿՈՅԱՆ.— Ճառ՝ արտասանած Երևանի Ստալինյան ընտրական օկրուգի ընտրողների նախընտրական ժողովում։ *Առանձին բրոշյուրով, Հայպետհրատ, 1950 թ.։*

«Ճշտորեն կիրառել և արմատավորել տնտեսական հաշվարկը»։ *«Ս. Հ.» 1952 թվականի հունիսի 15-ի առաջնորդողը։*

## 2. ՕՐԻՆԱԿԵԼԻՈՐԵՆ ՆԱԽԱՊԱՏՐԱՍՏՎԵՆՔ ԲԵՐՔԱՀԱՎԱՔԻՆ

*1. Բերքահավաքին հաջող նախապատրաստվելը բոլոր կոլտնտեսականների, ՄՏ կայանների մեխանիզատորների, սովխոզների աշխատողների պարտականությունն է։*

*2. Բերքահավաքին հաջող նախապատրաստվելու շնորհիվ՝ բերքը սեղմ ժամկետում և անկորուստ հավաքելը, պետական պարտավորությունները ժամանակին կատարելը գյուղատնտեսության բոլոր աշխատողների տնտեսական-քաղաքական խնդիրն է։*

*3. Գյուղատնտեսական դաշտային աշխատանքների պլանների ժամանակին կատարումը, գրաֆիկի համապատասխան աշխատանքների կազմակերպումը՝ բերքահավաքը սեղմ ժամկետում ավարտելու լավագույն պայմաններն են։*

*4. Գյուղատնտեսական բոլոր մեքենաների և գործիքների ժամանակին վերանորոգումը բերքահավա-*

քի խնդիրների կատարման հիմնական պայմաններից է։

5. Կոլտնտեսությունների և ՄՏ կայանների միջև եղած պայմանագրային պարտավորությունների անթերի կատարումը 1952 թվականը բարձր բերքի տարի դարձնելու կայուն երաշխիքն է։

6. Սովետական առաջավոր ագրոբիոլոգիական գիտության հիմունքների, գյուղատնտեսության առաջավորների փորձի մասսայականացումն ու արմատավորումը բերքահավաքը հաջող անցկացնելու լավագույն միջոցներն են։

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

«Օրինակելիորեն նախապատրաստվենք բերքահավաքին»։ «Ս. Հ.»-ի 1952 թվականի հունիսի 3-ի առաջնորդողը։

«Լայնորեն ծավալել սոցիալիստական մրցությունը գյուղատնտեսության նոր վերելքի համար»։ «Ս. Հ.»-ի 1952 թվականի հունիսի 11-ի առաջնորդողը։

«Սոցիալիստական մրցությունը և ագիտատորների խնդիրները»։ «Ագիտատորի բլոկնոտ» № 4, 1952 թ.։

## 3. ԱՄԵՐԻԿՅԱՆ ԻՄՊԵՐԻԱԼԻՍՏՆԵՐԸ ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ, ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ԱԶԱՏՈՒԹՅԱՆ ՈՒ ԻՆՔՆՈՒՐՈՒՅՆՈՒԹՅԱՆ ՈԽԵՐԻՄ ԹՇՆԱՄԻՆԵՐՆ ԵՆ

1. Լենինը և Ստալինը ամերիկյան իմպերիալիզմի մասին, որպես ամենառեակցիոն, ավազակային, ամենաարյունարբու իմպերիալիզմի։



2. Սպառազինությունների մրցավազքը, ռազմական բյուջեի և բանակի աճը, կապիտալիստական երկրներում ռազմական բազաների ստեղծումը, Արևմտյան Գերմանիայի և Ճապոնիայի վերառազմականացումը, ցույց են տալիս, որ ԱՄՆ-ի իմպերիալիստները տենդորեն նախապատրաստվում են համաշխարհային նոր պատերազմի։

3. Ամերիկյան և անգլիական իմպերիալիստների ագրեսիվ, թալանչիական պատերազմը Կորեայում։

4. Ամերիկյան իմպերիալիստների ամեն տեսակի այսպես կոչված «կոլեկտիվ միջոցառումների» պլանները, ամենից առաջ ուղղված են ՍՍՌՄ-ի և ժողովրդական դեմոկրատիայի երկրների դեմ։

5. Աճում ու ամրապնդվում են սոցիալիզմի, դեմոկրատիայի ու խաղաղության ճակատի ուժերը, ամբողջ աշխարհում օրավուր բարձրանում է ժողովուրդների ցասման ալիքը ընդդեմ ամերիկյան իմպերիալիստների պատերազմական նախապատրաստությունների և հակաժողովրդական ռեակցիոն քաղաքականության։

6. Անձնվեր աշխատանքով է՛լ ավելի ամրապնդենք ամբողջ աշխարհում ժողովուրդների միջև երկարատև և կայուն խաղաղության հզոր ամրոց— մեր Սոցիալիստական Հայրենիքի հզորությունը։

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Վ. Ի. ԼԵՆԻՆ.— Նամակ ամերիկյան բանվորներին։ Երկեր, հատոր 28, էջ 57—76, Հայպետհրատ, 1951 թ.։

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.— Զրույց «Պրավդա»-ի թղթակցի հետ: *Հայպետհրատ, առանձին բրոշյուրով, 1951 թ.:*

Լ. Պ. ԲԵՐԻԱ.— Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 34-րդ տարեդարձը: Զեկուցում Մոսկվայի Սովետի հանդիսավոր նիստում 1951 թ. նոյեմբերի 6-ին: *«Ս. Հ.» 1951 թ. նոյեմբերի 7, «Ագիտատորի բլոկնոտ» № 21, 1951 թ.:*

«Խաղաղասեր ժողովուրդների ցասումնալից բողոքը», *«Պրավդա»-ի մայիսի 18-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի մայիսի 20-ի համարում:*

Ռ. ՍՏԵԼՆԻԿՈՎ.— ԱՄՆ-ի ռեակցիոն օրենքները: *«Ս. Հ.»-ի 1952 թ. մայիսի 24-ի համարում:*

Եվրոպայի ժողովրդական դեմոկրատիայի երկրները սոցիալիզմի ուղու վրա: *Առանձին բրոշյուրով, Հայկական ՍՍՌ ԳԱ հրատարակչություն, 1950 թ.:*

---


Պատ. խմբագրի տեղակալ՝ Տ. ՎԱՐԺԱՊԵՏՅԱՆ

---

Отдел Пропаганды и агитации ЦК КП(б) Армении

**БЛОКНОТ АГИТАТОРА**

№ 12 1952 г.

*ՎՅ 04611 Պատվեր № 569 Տիրաժ 10.000*

*Հայպոլիգրաֆհրատի II տպարան, Երևան, Կնունյանցի փ. № 8*